Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 7 ԱՊՐԻԼ 1955

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


**Խմբագրության հասցեն.**— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին: Հեռախոս 2—52—78:






---

# ԼԵՆԻՆԻԶՄԻ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԻ ՄԵԾ ՈՒԺԸ

Ապրիլի 22-ին սովետական ժողովուրդը և ամբողջ առաջավոր մարդկությունը նշում են Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հանճարեղ ստեղծող, աշխարհում առաջին սոցիալիստական պետության հիմնադիր, ամբողջ աշխարհի աշխատավորության առաջնորդ և ուսուցիչ Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 85-ամյակը:

Լենինի անվան հետ է կապված մարքսիզմի զարգացման և համաշխարհային ռևոլյուցիոն շարժման պատմության մի ամբողջ դարաշրջան: Վ. Ի. Լենինը Մարքսի—Էնգելսի ուսմունքը պաշտպանեց բազմաթիվ թշնամիների բոլոր ոտնձգություններից և այն ավելի զարգացրեց պատմական նոր պայմաններին համապատասխան: Լենինիզմը իմպերիալիզմի և պրոլետարական ռևոլյուցիայի դարաշրջանի մարքսիզմն է:

Մարքսիզմի—լենինիզմի ուսմունքը ամենազոր է, որովհետև այն ճշմարիտ է: Այն խորությամբ բացահայտում է հասարակա-





կան զարգացման օրենքները, գիտականորեն արտահայտում է աշխատավորների արմատական շահերը, հանդիսանում է հզոր զենք կապիտալիստական ստրկության ոչնչացման համար, կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում։ Հենվելով առաջավոր գիտական մտքի բոլոր նվաճումների վրա, հարստանալով մասսաների ռևոլյուցիոն ստեղծագործության փորձով, մարքսիզմ-լենինիզմը անընդհատ զարգանում է և ավելի հզոր ազդեցություն է գործում ժողովուրդների բախտի վրա, համաշխարհային պատմության ամբողջ ընթացքի վրա։

Վ. Ի. Լենինը բազմակողմանիորեն մշակեց պարտիայի՝ որպես իշխանությունը նվաճելու, սոցիալիզմ ու կոմունիզմ կառուցելու համար մղվող պայքարում պրոլետարիատի հիմնական զենքի մասին ուսմունքը։ Ռևոլյուցիայի հանճար Լենինի կողմից ստեղծված և դաստիարակված Կոմունիստական պարտիայի մեջ իր մարմնավորումն է գտել մարքսիզմի-լենինիզմի գաղափարների կենսահաստատ հզոր ուժը։

Լենինիզմի գաղափարներով ոգեշնչվող և Կոմունիստական պարտիայի կողմից ղեկավարվող մեր երկրի աշխատավորները պատմության մեջ առաջինը փշրեցին կալ-



վածատիրական-կապիտալիստական ստրկության շղթաները, նվաճեցին ազատություն ու կառուցեցին սոցիալիզմ և այժմ վստահորեն կառուցում են կոմունիստական հասարակություն։

***

Լենինյան հանճարի անմահ ստեղծագործություններում տրված են տեսական հիմնական ցուցումներ սովետական ժողովրդին դեպի կոմունիզմ տանող ուղիների մասին։ Լենինը ապացուցեց սոցիալիզմի հաղթանակի հնարավորությունը մեր երկրում՝ պրոլետարիատի դիկտատուրայի պայմաններում և մշակեց տնտեսապես հետամնաց Ռուսաստանը առաջավոր, սոցիալիստական տերության վերածելու գիտականորեն հիմնավորված ծրագիրը։ Լենինը գրում էր, որ «Մենք մատերիալ ունենք թե՛ բնական հարստություններով, թե՛ մարդկային ուժերի պաշարով, թե՛ այն հիանալի թափով, որ տվեց ժողովրդական ստեղծագործությանը մեծ ռևոլյուցիան,— որպեսզի կարողանանք ստեղծել իրոք հզոր և լիառատ Ռուսիա» (Երկեր, հատոր 27, էջ 181)։

Իրագործելով լենինյան կանխատեսումները, Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդին վստահորեն առաջ տարավ սոցիալիստական շինարարության ու-

ղիով, համարձակորեն հաղթահարելով դժվարությունները և անողոքաբար ջարդելով թշնամիների դիմադրությունը։ Շնորհիվ բանվորների, գյուղացիների և ինտելիգենցիայի հերոսական աշխատանքի, Լենինի գործի մեծ շարունակող Ի. Վ. Ստալինի գլխավորած Կոմունիստական պարտիայի իմաստուն ղեկավարության, մեր երկիրը կարճ ժամանակամիջոցում վիթխարի թռիչք գործեց՝ հետամնացությունից դեպի առաջադիմություն, վերածվելով հզոր ինդուստրիալ-կոլտնտեսային, սոցիալիստական տերության։

Կոմունիստական պարտիան ապահովեց սոցիալիզմի հաղթանակը մեր երկրում շնորհիվ այն բանի, որ նա համառորեն և անշեղորեն անց էր կացնում երկրի սոցիալիստական ինդուստրացման քաղաքականություն, ծանր արդյունաբերության առավել զարգացման քաղաքականությունը։ Խոշոր մեքենայական արդյունաբերության մեջ Լենինը տեսնում էր սոցիալիզմի միակ նյութական հիմքը, երկրի տնտեսական ինքնուրույնության և պաշտպանունակության հուսալի երաշխիքը, գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխման և աշխատավորության բարեկեցության վերելքի բանալին։

Հետևելով ծանր արդյունաբերությունը ա-



մեն կերպ զարգացնելու վերաբերյալ Վ. Ի. Լենինի և Ի. Վ. Ստալինի ցուցումներին, մեր ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ հասավ հսկայական հաջողությունների։ 1953 թվականին ՍՍՌՄ ամբողջ խոշոր արդյունաբերության արտադրանքը 1913 թվականի մակարդակը (համեմատական գներով) գերազանցեց 30 անգամ, ընդսմին՝ արտադրության միջոցների արտադրությունը՝ ավելի քան 50 անգամ, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ գրեթե 70 անգամ, մեքենաներինը և սարքավորումներինը՝ 190 անգամ։ Ծանր արդյունաբերության արտադրանքը այժմ մոտ երեք և կես անգամ գերազանցում է 1940 թվականի մակարդակը։

Սակայն սխալ կլիներ կարծել, որ ծանր արդյունաբերությունը հասցնելով բարձր մակարդակի, մենք կարող ենք այժմ ետ պահել նրա հետագա զարգացումը։ ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումում սուր քննադատության ենթարկվեցին վերջին ժամանակներս տնտեսագետների որոշ մասի մոտ տեղ գտած այն հայացքները, թե ներկայումս գլխավոր ուշադրությունը պետք է կենտրոնացվի ոչ թե ծանր արդյունաբերության, այլ թեթև և սննդի արդյունաբերության առավել զարգացման վրա։ Եթե մենք

կանգնեինք այդպիսի ուղու վրա, ապա անխուսափելիորեն կխորտակեինք ոչ միայն ծանր արդյունաբերությունը, այլև թեթև արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը, տրանսպորտը։ Ահա ինչու պլենումը դատապարտեց նման հայացքները որպես աջ թեքման ղկռտոց, որպես պարտիայի գլխավոր գծի ռևիզիայի փորձ և պարտավորեցրեց վճռական պայքար մղել թշնամական հայացքների դեմ։

Այժմ, երբ վճռվում են սոցիալիզմի շինարարության ավարտման և աստիճանաբար կոմունիզմին անցնելու խնդիրները, պարտիան առաջվա նման գլխավոր ուշադրությունը դարձնում է ծանր արդյունաբերության զարգացմանը։ Ծանր ինդուստրիան եղել է, կա և կմնա ամբողջ ժողովրդական տնտեսության ու մեր երկրի անխորտակելի ռազմական հզորության ամուր հիմքը, ժողովրդի բարօրության անընդհատ աճի աղբյուրը։ Միայն ծանր արդյունաբերության առավելապես զարգացումն է ապահովում ժողովրդական տնտեսության բոլոր մյուս ճյուղերի, այդ թվում գյուղատնտեսության, թեթև և սննդի արդյունաբերության անշեղ վերելքը։

Գերագույն Սովետի կողմից հաստատված ՍՍՌՄ 1955 թվականի Պետական բյուջեով



ծանր արդյունաբերության զարգացման համար նախատեսված են մեծ հատկացումներ։ Ամբողջ արդյունաբերության ֆինանսավորման համար նախատեսված 189,6 միլիարդ ռուբլուց 163,6 միլիարդ ռուբլին ներդրվում է ծանր ինդուստրիայի զարգացման մեջ։

***

Մեր երկրում սոցիալիզմի հաղթանակի կարևորագույն պայմանն է հանդիսացել գյուղատնտեսության կոլեկտիվացման քաղաքականության հաջող իրագործումը։ Հենվելով ծանր արդյունաբերության զարգացման հաջողությունների վրա, մեր պարտիան կենսագործեց գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխման լենինյան հանճարեղ կոոպերատիվ պլանը, որը հետագա զարգացում ստացավ Ի. Վ. Ստալինի աշխատություններում և պարտիայի որոշումներում։ Կոլտնտեսային կարգի հաղթանակը գյուղացիությանը ազատեց կուլակային ստրկությունից, աղքատությունից և քայքայումից, վերջ տվեց գյուղի դարավոր հետամնացությանը, լայն հնարավորություններ բացեց գյուղատնտեսության արտադրողական ուժերի վերելքի համար և հաստատուն պայմաններ ստեղծեց բոլոր կոլտնտեսականների ունևոր ու կուլտուրական կյանքի համար։

ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի պատմական որոշումների և պարտիայի ու կառավարության այլ որոշումների մեջ նշված է գյուղատնտեսության բոլոր ճյուղերի շեշտակի վերելքի մարտական ծրագիրը։ Այս ծրագրի իրագործումն արդեն տալիս է առաջին դրական արդյունքները։ Չնայած երկրի հարավային մի շարք շրջաններն ընդգրկած երաշտին, 1954 թվականին երկիրն ստացավ ավելի շատ հաց, միս, կաթ և այլ գյուղատնտեսական մթերքներ, քան 1953 թվականին։

Բայց այն, ինչ արված է, միայն առաջին քայլն է հանդիսանում գյուղատնտեսական արտադրության վերելքի ընդարձակ ծրագրի իրականացման ուղղությամբ։ Գյուղատնտեսական կարևորագույն մթերքների արտադրության ձեռք բերված մակարդակը չի ծածկում երկրի աճող պահանջները և պետք է զգալիորեն բարձրացվի։

Հաշվի առնելով երկրի աճող պահանջները հացահատիկային կուլտուրաների նկատմամբ, ՍՄԿԿ Կենտկոմի Հունվարյան պլենումը վիթխարի խնդիր դրեց՝ մոտակա 5—6 տարիների ընթացքում ապահովել հացահատիկի տարեկան արտադրությունը՝ առնվազն 10 միլիարդ փութ և երկու—երկուսից ավելի անգամ ավելացնել հիմնական



անասնապահական մթերքների արտադրությունը։ Սա լիովին հնարավորություն կտա բարելավելու երկրի հացահատիկի պահանջները՝ պարենային նպատակների համար, անասունների կերակրման համար, ինչպես նաև պետական ռեզերվները համալրելու և արտաքին առևտրի համար։

Մենք ունենք բոլոր պայմանները այս վիթխարի խնդիրը լուծելու համար։ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը ցույց տվեց հացահատիկի արտադրության ավելացման կոնկրետ աղբյուրները՝ հացահատիկի կորստի պակասեցումը բերքահավաքի ժամանակ և հին վարելահողերի բերքատվության բարձրացումը, եգիպտացորենի ցանքերի զգալի ընդարձակումը, խամ և խոպան հողերի յուրացումը Սիբիրում, Ղազախստանում և երկրի առևելյան մյուս շրջաններում։ 1956 թվականին ցանվելու են 28—30 միլիոն հեկտար նոր հողեր, որոնք լրացուցիչ կերպով կտան շուրջ մեկ միլիարդ 800 միլիոն փութ հացահատիկ։

Պարտիայի որոշումը ոգեշնչեց ամբողջ ժողովրդին, առաջ բերեց միլիոնավոր սովետական մարդկանց աշխատանքային ակտիվության և ստեղծագործական նախաձեռնության հսկայական վերելք։ Հացահատիկի արտադրության ավելացման, գյուղատնտե-

ության բոլոր ճյուղերի վերելքի մեջ արմատապես շահագրգռված են բանվորները, գյուղացիները և ինտելիգենցիան, ամբողջ սովետական ժողովուրդը։

Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման հաջողությունների հիման վրա անշեղորեն բարձրանում է սովետական մարդկանց նյութական բարեկեցությունը և կուլտուրական մակարդակը։ Տարեցտարի ավելի լայնորեն է ծավալվում բնակարանային շինարարությունը, բարելավվում է բնակչության բուժսպասարկումը, ավելի շատ են կառուցվում դպրոցներ, հիվանդանոցներ, ծննդատներ, մանկամսուրներ, ակումբներ, թատրոններ։ Սովետական կուլտուրան, գիտությունը, գրականությունը և արվեստը հասել են իսկական ծաղկման։

Ծանր արդյունաբերության հզոր զարգացման և սովետական գիտության հաջողությունների շնորհիվ ՍՍՌՄ-ը լիկվիդացրեց ատոմային զենքի նկատմամբ ԱՄՆ-ի ունեցած մենաշնորհը, իսկ ջրածնային զենքի արտադրության ասպարեզում ԱՄՆ-ը ընկավ հետամնացների դրության մեջ։ Սովետական գիտնականները մեծ աշխատանք են տանում ատոմային էներգիան ժողովրդական տնտեսության, գիտության և բժշկության մեջ օգտագործելու ուղղությամբ։ ՍՍՌՄ-ում ա-



տոմային էներգիայով աշխատում է աշխարհում առաջին արդյունաբերական էլեկտրակայանը և կառուցվում են շատ այլ, ավելի հզոր էլեկտրակայաններ։

***

Լենինիզմի գաղափարների մեծ, կենսահաստատ ուժի վառ մարմնավորումն է հանդիսանում հզոր սոցիալիստական պետությունը։ Սովետական պետության ուժի և անպարտելիության աղբյուր է ծառայում բանվոր դասակարգի և գյուղացիության անխախտելի դաշինքը, ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը, Կոմունիստական պարտիայի իմաստուն ղեկավարությունը։

Բանվորների և գյուղացիների աշխարհում առաջին սոցիալիստական պետության մեծ ստեղծող Վ. Ի. Լենինը պարտիային սովորեցնում էր անդադար ամրացնել բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը։ Բանվոր դասակարգի և գյուղացիության անխախտելի դաշինքի մեջ Լենինը տեսնում էր պրոլետարիատի դիկտատուրայի բարձրագույն սկզբունքը, մեր բոլոր հաջողությունների և վերջնական հաղթանակի գրավականը։ Կոմունիստական պարտիան անշեղորեն հետևում է Լենինի պատգամներին, նա բոլոր ուժերով ամրապնդում է բանվոր դասակար-

դի և կոլտնտեսային գյուղացիության դաշինքը։

Ազգային հարցի վերաբերյալ Վ. Ի. Լենինը մշակեց կուռ թեորիա, ծրագիր և տակտիկա, նա ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության ոգեշնչողն էր։ Հետևողականորեն իրականացնելով լենինյան-ստալինյան ազգային քաղաքականությունը, կոմունիստական պարտիան մեր Հայրենիքի բոլոր ժողովուրդներին համախմբեց մի եղբայրական ընտանիքի մեջ, ստեղծեց հզոր բազմազգ սոցիալիստական պետություն։ Պարտիան աչքի լույսի պես պահպանում է ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը՝ սովետական բազմազգ պետության հիմքերի հիմքը, անխոնջ կերպով դաստիարակում է աշխատավորներին ժողովուրդների բարեկամության իդեոլոգիայի ոգով, պրոլետարական ինտերնացիոնալիզմի և բոլոր երկրների աշխատավորության հետ եղբայրական կապերի հաստատման ոգով։

Հետևելով Լենինի ցուցումներին, Կոմունիստական պարտիան օրեցօր ամրապնդում է իր կապերը աշխատավոր մասսաների հետ։ Պարտիայի ամբողջ գործունեությունը տոգորված է ժողովրդի, պատմության իսկական կերտողների՝ բանվորների և գյուղացի-



ների ռևոլյուցիոն ստեղծագործական եռանդի նկատմամբ խոր հավատով։ Պարտիայի ուժը՝ ժողովրդի հետ ունեցած նրա անխզելի կապի մեջ է։ Ժողովրդի ուժը՝ իր Կոմունիստական պարտիայի շուրջը համախմբված լինելու մեջ է։

Կոմունիստական պարտիայի ուժի աղբյուր է հանդիսանում Լենինի կողմից մշակված և ՍՄԿՊ Կանոնադրության մեջ մարմնավորված պարտիական կյանքի հաստատուն նորմաների և ղեկավարման սկզբունքների խիստ կիրառումը։ Պարտիան հաղթանակներ է տանում նրա համար, որ նա պարտադիր կերպով կենսագործում է պարտիական շինարարության լենինյան օրենքները, խստորեն պահպանում է կոլեկտիվ ղեկավարության բարձրագույն սկզբունքը։ Պարտիան համարձակորեն ծավալում է քննադատությունը և ինքնաքննադատությունը, զարգացնում է կոմունիստների և բոլոր աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունը։

Կոմունիստական պարտիան հաղթանակում էր և հաղթանակում է հավատարիմ լինելով լենինիզմին։ Իր կեսդարյա փառավոր պատմության ընթացքում պարտիան երբեք չի շեղվել լենինյան ուղուց, միշտ անձնվիրաբար

պայքարել է ժողովրդի շահերի համար, մեր Հայրենիքի ծաղկման համար և սովետական ժողովրդին հասցրել է համաշխարհային-պատմական հաղթանակների։

Լենինիզմը բոլոր երկրների աշխատավորների, ամբողջ պրոգրեսիվ մարդկության համար ուսմունք է և պայքարի դրոշ՝ հանուն խաղաղության և ժողովուրդների բարեկամության, հանուն ժողովուրդների լուսավոր ապագայի։ Լենինիզմի դրոշի տակ իրենց նոր, ազատ և երջանիկ կյանքն են կառուցում չին մեծ ժողովուրդը, ժողովրդական դեմոկրատիայի բոլոր երկրների աշխատավորները։ Օգտագործելով ՍՍՌՄ-ի հարուստ փորձն ու աջակցությունը, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Բուլղարիայի և սոցիալիստական լագերի մյուս երկրների ժողովուրդները լուրջ հաջողությունների են հասել նոր կյանքի կառուցման գործում։ Իրենց երկրների կոնկրետ պայմաններում, ստեղծագործաբար կիրառելով մարքսիզմ-լենինիզմի ուսմունքը, ժողովրդական դեմոկրատիայի երկրների կոմունիստական և բանվորական պարտիաները վստահորեն առաջնորդում են իրենց ժողովուրդներին սոցիալիզմի, խաղաղության և պրոգրեսի ուղիով։ Լենինիզմի գաղափարները



կապիտալիստական և գաղութային երկրների աշխատավորներին պայքարի են ոգեշնչում՝ հանուն ազատության, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի։

Սովետական Միությունը մշտապես հանդես է գալիս որպես խաղաղության և ժողովուրդների անվտանգության համար մղվող պայքարի մունետիկ ու դրոշակակիր, նրանց միջև սերտ համագործակցություն հաստատելու համար։ Խաղաղության և ժողովուրդների միջև բարեկամություն ստեղծելու համար մղվող պայքարի լենինյան գաղափարները խաղաղության համար պայքարող մարտիկների միջազգային հզոր շարժման մասնակիցներին բոլոր երկրներում ոգեշնչում են անձնազոհ և ավելի ու ավելի վճռական պայքար մղելու իմպերիալիստների՝ պատերազմի հրձիգների դեմ։

Լենինիզմի հաղթական դրոշի ներքո, սերտորեն համախմբված Կոմունիստական պարտիայի և նրա Կենտրոնական Կոմիտեի շուրջը, Սովետական կառավարության շուրջը, սովետական ժողովուրդը վստահորեն կառուցում է կոմունիստական հասարակություն։

---

# ՄԱՅԻՍԻ ՄԵԿԸ ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՏՈՆՆ Է

*Աշխատավորների միջազգային տոնը՝ Մայիսի մեկը, մեր երկրի աշխատավորները այս տարի նշում են ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման հինգերորդ հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու, սովետական էկոնոմիկայի հզոր հիմքը հանդիսացող ծանր արդյունաբերության անշեղ վերելքի, սոցիալիստական պետության հետագա ամրապնդման և սովետական մարդկանց բարեկեցության բարձրացման համար մղվող համաժողովրդական պայքարի իրադրության մեջ:*

*Մեր մեծ սոցիալիստական Հայրենիքը գտնվում է իր ուժերի ծաղկման շրջանում: Սովետական մարդիկ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ հասել են խոշոր հաջողությունների տնտեսական և կուլտուրական շինարարության բնագավառներում:*



*1954 թվականը եղավ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հետագա զարգացման տարի: ՍՍՌՄ արդյունաբերությունը, ամբողջությամբ վերցրած, համախառն արտադրանքի 1954 թվականի պլանը կատարեց 103 տոկոսով: Նախորդ տարվա համեմատությամբ արդյունաբերության համախառն արտադրանքն աճեց 13 տոկոսով, 1950 թվականի համեմատությամբ՝ 65 տոկոսով, իսկ 1940 թվականի համեմատությամբ՝ 2,8 անգամ: 1954 թվականին, ինչպես միշտ, բուռն թափով աճեց ժողովրդական տնտեսության զարգացման հիմքը հանդիսացող ծանր արդյունաբերությունը: Անցած 1954 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, չուգունի արտադրությունը ավելացավ 109 տոկոսով, պողպատինը՝ 108 տոկոսով, ածխինը՝ 112 տոկոսով, էլեկտրաէներգիայինը՝ 111 տոկոսով և այլն: Ծանր արդյունաբերության արտադրանքի այս և ուրիշ շատ կարևոր տեսակների տարեկան պլանը հաջողությամբ գերակատարվեց: Ծանր արդյունաբերության արտադրանքը ներկայումս 3,4 անգամ, իսկ այդ թվում մեքենաշինության արտադրանքը մոտ 4 անգամ ավելի շատ է, քան նախապատերազմյան 1940 թվականին:*

*1955 թվականին, մեր արդյունաբերության համախառն արտադրանքի ընդհանուր ծավալը, 1954 թվականի համեմատությամբ կա-*

ճի ավելի քան 9 տոկոսով, իսկ 4-րդ հնգամյակի վերջին տարվա՝ 1950 թվականի համեմատությամբ՝ 80 տոկոսով։ Դա նշանակում է, որ հնգամյա պլանը ՍՍՌՄ արդյունաբերությունը կկատարի ժամկետից շուտ։ Է՛լ ավելի մեծ չափերով կաճի ծանր արդյունաբերության արտադրանքը. հինգերորդ հնգամյակի վերջում այն կավելանա 84 տոկոսով։ Մեր երկրի հզոր, ծանր արդյունաբերությունը Կոմունիստական պարտիայի և սովետական ժողովրդի մեծ նվաճումն է։

Ծանր արդյունաբերության զարգացման գործում մեր պարտիան միշտ հետևել է մեծ Լենինի և նրա գործի հավատարիմ շարունակող Ի. Վ. Ստալինի ցուցումներին՝ առավելապես և արագ զարգացնել ծանր արդյունաբերությունը ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի համեմատ, որպես սովետական պետության հզորության հիմքի։ Ծանր ինդուստրիան առավելապես զարգացնելու գիծը, որ պարտիան պաշտպանել է դասակարգային թշնամիների և նրանց գործակալների դեմ մղված կատաղի պայքարում, արդարացված և ստուգված է մեր երկրում սոցիալիստական շինարարության ամբողջ ընթացքով։

Կոմունիստական պարտիան, ղեկավարվե-



լով խոշոր մեքենայական արդյունաբերության, ծանր ինդուստրիայի զարգացման և երկրի էլեկտրիֆիկացման մասին մեծ Լենինի ուսմունքով, առաջվա պես ներկայումս էլ իր գլխավոր խնդիրն է համարում ծանր արդյունաբերության հետագա առավել հզոր վերելքը, որովհետև այն հանդիսանում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի, այդ թվում գյուղատնտեսության և թեթև ու սննդի արդյունաբերության շեշտակի զարգացման, սովետական ժողովրդի նյութական բարեկեցության աճման հիմքը, մեր հայրենիքի անխորտակելի պաշտպանունակության և նրա քաջարի զինված ուժերի հզորության հիմքը։

Միայն ծանր արդյունաբերության զարգացման և երկրի էլեկտրիֆիկացման բազայի վրա կարելի է ապահովել նորագույն տեխնիկայի լայն արմատավորումը ժողովրդական տնտեսության մեջ, ապահովել թեթև, սննդի արդյունաբերության և մյուս ճյուղերի հետագա զարգացումը, գյուղատնտեսության վերելքը։

Ընդհանրապես սոցիալիստական արդյունաբերության և հատկապես ծանր ինդուստրիայի բազմակողմանի զարգացումը կոմունիզմի նյութա-արտադրական բազայի ըստեղծման գլխավոր խնդիրն է։

Մեր ժողովուրդը քաջ հասկանում է նաև սոցիալիստական ինդուստրիայի ամեն կերպ արագ և ծավալուն զարգացման միջազգային նշանակությունը, մանավանդ այժմ, երբ աշխարհի ռեակցիոն իմպերիալիստական ուժերը տենդորեն նոր պատերազմ են նախապատրաստում Սովետական Միության, ժողովրդական դեմոկրատիայի և մյուս խաղաղասեր երկրների դեմ։

1954 թվականին ծանր արդյունաբերության զարգացումը ապահովեց արդյունաբերության մյուս ճյուղերի արտադրության աճը։ Զգալի չափով ընդլայնվեց ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը։

1954 թվականին թեթև և սննդի արդյունաբերության ձեռնարկությունները բարելավեցին թողարկվող արտադրանքի ասորտիմենտը, բնակչությանը տվեցին ավելի շատ և որակյալ ապրանքներ։ 1953 թվականի համեմատությամբ, 1954 թվականին բամբակե խայտաճյուս գործվածքների արտադրությունը ավելացավ 53 տոկոսով, իսկ խավոտ գործվածքներինը՝ 88 տոկոսով։ Բրդե գործվածքների արտադրությունը աճեց 17 տոկոսով, այդ թվում բրդե կոստյումակամվոլային գործվածքների թողարկումը՝ 50 տոկոսով, շրջազգեստի մաքուր բրդե կամվո-



լային գործվածքներինը՝ 45 տոկոսով և վերարկուացու մաքուր բրդե նուրբ մահուդի գործվածքներինը՝ 62 տոկոսով։ Կաշվե կոշիկի արտադրությունը աճեց 7 տոկոսով, այդ թվում մոդելային կոշիկի թողարկումը՝ 18 տոկոսով և այլն։

Այս հաջողությունները վկայում են, որ Կոմունիստական պարտիան մշտական հոգատարություն ցուցաբերելով աշխատավորների բարեկեցության նկատմամբ, երբեք աչքաթող չի արել ժողովրդական սպառման ապրանքների արտադրության զարգացման խնդիրները։ Ծանր արդյունաբերության առավել աճի հիման վրա պարտիան առաջ է մղել և շարունակ առաջ կմղի ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը։

Մայիսմեկյան տոնը սովետական ժողովուրդը դիմավորում է սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման ասպարեզում ձեռք բերած խոշոր հաջողությունների պայմաններում։ Կոմունիզմի հաջող կառուցման համար անհրաժեշտ է ունենալ ոչ միայն հզոր արդյունաբերություն, այլ դրա հետ մեկտեղ ունենալ զարգացած գյուղատնտեսություն, որը կարողանա արտադրել այնքան պարեն ու գյուղատնտեսական հումք, որ ապահովի բնակչության անխա-

փան մատակարարումը և ծածկի պետության մյուս պահանջմունքները։

Մինչդեռ հայտնի է, որ վերջին տարիներին գյուղատնտեսության մի շարք կարևոր ճյուղերի զարգացումը լուրջ կերպով ետ էր մնում։ ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան, Փետրվար-մարտյան, Հունիսյան և Հունվարյան պլենումների որոշումները նշեցին ծանր ինդուստրիայի զարգացման հիման վրա գյուղատնտեսության հետագա հզոր վերելքի ուղիները։

Սովետական հերոս ժողովուրդը ջերմորեն արձագանքելով և հավանություն տալով պարտիայի ու կառավարության որոշումներին, 1954 թվականին նշանակալից հաջողությունների հասավ գյուղատնտեսության բոլոր ճյուղերի զարգացման գծով։

Չնայած Ուկրաինայի հարավում և Պովոլժյեյի շրջաններում տեղի ունեցած երաշտին և երկրի մի շարք շրջաններում օդերևութաբանական անբարենպաստ պայմաններին, երկիրը անցյալ տարի ավելի շատ հացահատիկ, կարտոֆիլ, բանջարեղեն, միս, յուղ և այլ մթերքներ ստացավ, քան 1953 թվականին։

Դրա հետ միասին ստեղծվել են անհրաժեշտ պայմաններ մոտակա տարիներին գյուղատնտեսության հզոր վերելքի համար։



Գերակատարվել է աշնանացանի պլանը։ Երկրում կատարվել է 40 միլիոն 900 հազար հեկտար աշնանացան, այդ թվում ավելի քան 20 միլիոն հեկտար ցորեն, որը 1,6 միլիոն հեկտարով ավելի է 1953 թվականի համեմատությամբ, իսկ ցրտահերկի տարածությունն աճել է ավելի քան 12 միլիոն հեկտարով։

Անցած տարի աչքի ընկնող հաջողություններ ձեռք բերվեցին խոպան ու խամ հողերի յուրացման գործում։ Նոր հողերի յուրացման վայրերը մեկնած սովետական հայրենասերների հերոսական աշխատանքի շնորհիվ պլանով նախատեսված 13 միլիոն հեկտարի դիմաց յուրացվեց 17,6 միլիոն հեկտար խոպան ու խամ հող, որոնց վրա այս տարի պետք է գարնանացան կատարվի։ Ձեռնարկված մի շարք միջոցառումների շնորհիվ երկրում ավելացավ մթերատու անասունների գլխաքանակը։ 1953 թվականի հոկտեմբերի 1-ից մինչև 1954 թվականի հոկտեմբերի 1-ը կովերի գլխաքանակն ավելացավ 1,5 միլիոն գլխով, ամբողջ խոշոր եղջերավոր անասուններինը՝ 1,9 միլիոն գլխով, խոզերինը՝ 3,4 միլիոն գլխով, ոչխարներինը՝ 2,6 միլիոն գլխով։ Դրա հիման վրա ավելացավ անասնաբուծական մթերքների արտադրությունն ու ապրանքայնու-

թյունը, ավելացան այդ ճյուղերից ստացվող եկամուտները։

Այս հաջողությունները մեկ տարվա ընթացքում հնարավոր եղավ պարտիայի կազմակերպական-քաղաքական աշխատանքի շնորհիվ, պետության լուրջ օգնության շնորհիվ, բանվոր դասակարգի հսկայական օգնության և գյուղատնտեսության բնագավառի աշխատողների եռանդուն աշխատանքի շնորհիվ։ Այդ համաժողովրդական պայքարում նորից դրսևորվեց քաղաքի, բանվոր դասակարգի օգնությունը գյուղին, դրանում կրկին դրսևորվեց բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության անխախտ դաշինքի մեծ ուժը և է՛լ ավելի ամրապնդվեց այդ դաշինքը՝ սովետական հասարակարգի հզորության հիմքը։

Չթուլացնելով ուշադրությունը արդյունաբերության զարգացման նկատմամբ, պետությունը ուժեղացրեց օգնությունը գյուղացիությանը։ Պետության լրացուցիչ հատկացումների շնորհիվ 1954 թվականին արդյունաբերությունը գյուղատնտեսությանը տվեց ընդհանուր տորժածության 137 հազար տրակտոր (15 ուժանոցի վերածած) և 46 հազար շարահերկ մշակության տրակտոր, 37 հազար հացահատիկային կոմբայն և այլ մեքենաներ։ ՄՏՍ կայաններում ստեղծվեցին



մշտական կադրեր, որոնց թիվը կազմում է մոտ 2 միլիոն մարդ, կոլտնտեսություններում աշխատանքի են ուղարկվել 120 հազար ագրոնոմ և զոոտեխնիկ։

Հազարավոր ձեռնարկություններ և հիմնարկներ որակյալ բանվորներ ու մասնագետներ ուղարկեցին յուրացնելու խոպան ու խամ հողերը։

ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումը նոր խնդիր դրեց գյուղատնտեսության ֆրոնտի աշխատողների առջև՝ մոտակա հինգ-վեց տարում հացահատիկի համախառն բերքը տարեկան հասցնել առնվազն 10 միլիարդ փթի և երկու-երկուսից ավելի անգամ ավելացնել անասնաբուծական հիմնական մթերքների արտադրությունը։ Այդ համաժողովրդական խնդրի լուծման համար, բերքատվությունը բարձրացնելու և բերքահավաքի ժամանակ բերքի կորուստները կրճատելու հետ մեկտեղ, առավել մատչելի և արագ միջոց է լայնորեն ծավալել խամ և խոպան հողերի յուրացման աշխատանքները, այն հաշվով, որ արդեն 1956 թվականին այդ հողերում ցանքերը կազմեն առնվազն 28—30 միլիոն հեկտար։

Հացահատիկի արտադրության խոշորագույն ռեզերվ է նաև եգիպտացորենը, որպես բարձր բերքատու և արժեքավոր կու-

տուրայի ցանքերի ընդարձակումը։ Խնդիր է դրվում մինչև 1960 թվականը եգիպտացորենի ցանքատարածությունները հասցնել առնվազն 28 միլիոն հեկտարի։ Եգիպտացորենի արժեքավորությունն այն է, որ նա միաժամանակ լուծում է երկու խնդիր՝ համալրում է հացահատիկի ռեսուրսները և օգտագործվում է որպես հյութալի, արժեքավոր անասնակեր։

Գյուղատնտեսության զարգացման վերաբերյալ պարտիայի մշակած ծրագրի իրագործման շնորհիվ մոտակա տարիներում երկրում նշանակալի չափով կավելանա հացահատիկի, կարտոֆիլի, բանջարեղենի, տեխնիկական կուլտուրաների և անասնաբուծական մթերքների արտադրությունը։

ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումներին համապատասխան «Գյուղատնտեսության պլանավորման պրակտիկան փոխելու մասին» ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը բացառիկ կարևոր դեր կխաղա կոլտնտեսությունների, ՄՏ կայանների ու սովխոզների հետագա ամրապնդման, ամբողջ գյուղատնտեսական արտադրության վերելքի գործում։

Պլանավորման նոր կարգի նշանակությունն ամենից առաջ այն է, որ լայն հնարավորություն է տրվում կոլտնտեսականնե-



րին, ՄՏ կայանների և սովխոզների աշխատողներին ստեղծագործական նախաձեռնություն հանդես բերել լավագույն ձևով օգտագործելու իրենց ամրացված հողերը և խիստ կերպով ավելացնել դաշտավարության ու անասնաբուծության մթերքների արտադրությունը։ Գյուղատնտեսության հետագա զարգացման վերաբերյալ պարտիայի մշակած ծավալուն ծրագիրը հանդիսանում է այն բանի փայլուն վկայությունը, որ կոմունիստական պարտիայի համար ոչ մի բան այնքան բարձր չէ, որքան ժողովրդի բարօրության մասին հոգատարությունը։

Ժողովրդական տնտեսության հաջողությունների հիման վրա աճում է աշխատավորների նյութական բարեկեցությունը, անշեղորեն բարձրանում է բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը և կոլտնտեսային գյուղացիության եկամուտը։

ՍՍՌՄ ազգային եկամուտը 1954 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, աճել է 11 տոկոսով։ Ժողովրդական սպառման ապրանքների պետական մանրածախ գների 1954 թվականին անցկացված թվով յոթերորդ իջեցումը բնակչությանը տվեց մեկ տարվա հաշվով 20 միլիարդ ռուբլու ուղղակի օգուտ։

Գյուղատնտեսական մթերքների պետա-

կան մթերման ու գնման գների բարձրացման շնորհիվ, որն անցկացվեց 1953 թվականի երկրորդ կեսին, զգալի չափով ավելացան կոլտնտեսությունների և կոլտնտեսականների դրամական եկամուտները։ Նրանք պետությանը հանձնած և վաճառած իրենց արտադրանքի համար 1953 թվականին ստացան 12 միլիարդ ռուբլով ավելի, իսկ 1954 թվականին՝ 25 միլիարդ ռուբլով ավելի դրամական եկամուտ, քան 1952 թվականին։

Անցյալ տարի երկրում անասնաբուծության մթերքների արտադրության և մթերման ավելացման հիման վրա ավելացավ ժողովրդական սպառման մակարդակը։ 1954 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, մսի վաճառքը բնակչությանը ավելացավ 2,8 անգամ, կենդանական յուղինը՝ 2,6 անգամ, ձվինը՝ 1,4 անգամ, բրդյա գործվածքեղենինը՝ մոտ 3 անգամ։ Սա վկայում է անասնաբուծության հաջողությունների հետ մեկտեղ նաև սովետական ժողովրդի գնողունակության բարձրացման մասին։ Տարեցտարի ավելացվում են պետական բյուջեից բնակչությանը նպաստների ու թոշակների, բժշկական ձրի օգնության, սովորելու և կուլտուր-կենցաղային ու այլ կարիքների համար տրվող ամենամյա վճարումները։ Ան-



ընդհատ ընդլայնվում է ծննդատների, հիվանդանոցների, բժշկական հիմնարկների, ինչպես նաև սանատորիաների ու հանգստյան տների ցանցը։

***

Մայիսի 1-ը հիանալի հաջողություններով է դիմավորում նաև ծաղկող Հայաստանի աշխատավորությունը։

Արձագանքելով հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու վերաբերյալ Մոսկվայի առաջավոր ձեռնարկությունների կոլեկտիվների հայրենասիրական նախաձեռնությանը, ռեսպուբլիկայի արդյունաբերության և գյուղատնտեսության աշխատողները անձնվեր պայքար ծավալեցին 1954 թվականի առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար և այժմ ջանք չեն խնայում, որպեսզի հնգամյա պլանի վերջին տարվա առաջադրանքները ժամկետից շուտ կատարեն։

Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը 1954 թվականի պետական պլանը կատարեց 102 տոկոսով։ Արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը, 1953 թվականի համեմատությամբ, աճեց 18 տոկոսով, 1950 թվականի համեմատությամբ՝ 79 տոկոսով, իսկ նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ՝ 4,5 անգամ։

Մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության զարգացման տեմպերը արդեն 1954 թվականին գերազանցեցին հնգամյա պլանով 1955 թվականի համար նախատեսված մակարդակը։

Ծանր արդյունաբերության արագ աճի հիման վրա ռեսպուբլիկայում զարգանում և ընդլայնվում է լայն սպառման ապրանքների՝ թեթև և սննդի արդյունաբերության արտադրությունը։ Անցյալ տարի պլանից ավելի արտադրվել են զանազան տեսակի գործվածքներ, հագուստեղեն, սննդամթերքներ, տնային գործածության առարկաներ և ուրիշ ապրանքներ։

Որոշակի հաջողություններ են ձեռք բերվել ռեսպուբլիկայի գյուղատնտեսության ասպարեզում։ Տարեցտարի բարձրանում է կոլտնտեսային արտադրության մեքենայացման և էլեկտրիֆիկացման աստիճանը, ընդլայնվում են հողագործության ոռոգելի տարածությունները, աճում են կոլտնտեսությունների եկամուտները։

Ռեսպուբլիկայում վիթխարի աշխատանք է կատարվել աշխատավորների նյութական բարեկեցությունը բարձրացնելու ուղղությամբ։ Միայն բնակարանային շինարարության գծով կապիտալ ներդրումները 1954 թվականին 1953 թվականի համեմատու-



թյամբ, աճել են 15 տոկոսով։ 1948—1954 թվականներին շահագործման է հանձնվել 563,014 ք. մ. նոր բնակելի տարածություն և բացի դրանից, կառուցվել է 40 հազար անհատական տուն։ Ավելացել է բժիշկների, հիվանդանոցների, սանատորիաների, հանգստյան տների, մանկամսուրների և առողջապահական այլ հիմնարկների թիվը։

Զգալի են կուլտուրայի բնագավառի նվաճումները։ Ռեսպուբլիկայում այժմ կա 1.200 դպրոց, որտեղ սովորում են ավելի քան 300 հազար երեխա, 17 բուհ, ուր սովորում են 15 հազար ուսանող։ Ռեսպուբլիկայի բուհերն ու տեխնիկումները 1954 թվականին տվեցին 2.462 շրջանավարտ մասնագետներ՝ մանկավարժ, բժիշկ, ինժեներ, անասնաբույժ, զոոտեխնիկ, ագրոնոմ, տնտեսագետ, արվեստի աշխատող և այլն։ Ռեսպուբլիկան ծածկված է կուլտուրական օջախների լայն ցանցով, որոնց թիվը ամեն տարի ավելանում է։ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը բոլոր պայմանները ստեղծել են հայ ժողովրդի ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի զարգացման համար։

***

Աշխատավորների միջազգային տնը տնտեսության և կուլտուրայի զարգացման

բուռն վերելքի պայմաններում են դիմավորում նաև Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի և ժողովրդական դեմոկրատիայի մյուս երկրների աշխատավորները, որոնք նոր, ազատ, ունևոր, բարեկեցիկ կյանք են ստեղծել իրենց համար։ Մինչդեռ կապիտալիստական երկրներում աշխատավորները իրենց գոյությունը քարշ են տալիս կապիտալի դաժան շահագործման պայմաններում, կարիքի ու զրկանքների մեջ։

ՍՍՌՄ-ի, ժողովրդական դեմոկրատիայի երկրների և ամբողջ աշխարհի խաղաղասեր ժողովուրդները Մայիսմեկյան տոնը նշում են խաղաղության ուժերի հետագա ամրապնդման ու հզորացման պայմաններում։

Մայիսմեկյան տոնակատարությունը կլինի սովետական ժողովրդի բարոյա-քաղաքական միասնության, ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության, մեծ Լենինի ստեղծած Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության շուրջը նրա կուռ համախմբվածության վառ ցույցը։

Կեցցե՛ աշխատավորների միջազգային տոնը՝ Մայիսի մեկը։

---



# ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ՄԹԵՐԱՏՎՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ

Սևանի շրջանի Լճաշեն գյուղի Ստալինի անվան կոլտնտեսության կաթնապրանքային ֆերմայի վարիչ Նուրիջան ԳՐԻԳՈՐՅԱՆԻ պատմածը

Անասնաբուծության զարգացման բնագավառում մեր կոլտնտեսությունը վերջին երկու տարվա ընթացքում զգալի հաջողությունների է հասել։ Ապահովելով հանրային հոտի սեփական վերարտադրությունը, կոլտնտեսությունն 1954 թ. խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակի ավելացման պլանը կատարեց 101 տոկոսով, ոչխարներինը՝ 104 տոկոսով, խոզերինը՝ 116 տոկոսով, թռչուններինը՝ 143 տոկոսով։ Նախորդ տարիների համեմատությամբ զգալիորեն ավելացավ անասունների մթերատվությունը։

Նպատակ ունենալով ամրապնդել այդ հաջողությունները, մեր անասնապահ կոլտնտեսականները պայմաններ են ստեղծում 1955 թվականը անասնաբուծության շեշտակի վե-

ինքի տարի դարձնելու, անասնաբուծությունը կոլտնտեսության ամենաեկամտաբեր ճյուղը դարձնելու համար։ Մեր կոլտնտեսականները տարիների փորձով համոզվել են, որ անասնաբուծության վերելքի վճռական պայմաններից մեկը անասունների մսուրային շրջանի հաջող կազմակերպումն է։ Մսուրային շրջանում է, որ ստացվում է անասնաբուծական մթերքների մի զգալի մասը, կատարվում է մասսայական ծինը, մատղաշների աճեցումն ու անկորուստ պահպանումը։ Այդ նպատակով, մսուրային շրջանի սկզբից ևեթ, կոլտնտեսությունում միջոցներ են ձեռնարկվում մատղաշների ու հոտի ամբողջ գլխաքանակի պահպանման հետ միասին, բարձրացնել նաև կովերի կաթնատվությունը, այն չիջեցնել գոնե աշնանային ամիսների կաթնատվության մակարդակից։ Անասունների մսուրային շրջանի հաջող անցկացման կարևոր պայմանը համարելով կերի կայուն բազայի ստեղծումը, կոլտնտեսությունն անասուններին ապահովել է բազմապիսի հյութալի կերերով։

Ամռանը որպես սիլոսի մասսա օգտագործվեց ոչ միայն սիլոսացու արևածաղկի բերքը, այլև արտերի միջնակներից ու ճանապարհների եզրերից հնձված խոտը։ Սիլոս պատրաստվեց նաև մոլախոտերից։ Միաժամա-



նակ կերահայթհայթման բրիգադան, անասնապահական ֆերմայի աշխատողների օգնությամբ խոշոր աշխատանք կատարեց բնական խոտհարքների մակերեսային բարելավման և ցանովի խոտաբույսերի մշակման ուղղությամբ։ Դրա արդյունքը եղավ այն, որ կոլտնտեսությունը բնական խոտհարքների յուրաքանչյուր հեկտարից ստացավ 15 ցենտներ, ցանովի խոտաբույսերից՝ 28 ցենտներ բարձրորակ խոտ։ Այդպիսով, կոլտնտեսությունը հանրային անասունների մսուրային շրջանի համար կուտակեց 980 տոննա սիլոս, 3.200 տոննա կոշտ կեր, որի մոտ 55 տոկոսը կազմում է խոտը։ Բացի դրանից, անասնաբուծության կարիքների համար աշնանն առանձնացվեց 120 տոննա կերի ճակնդեղ, 70 տոննա կարտոֆիլ, 60 տոննա հատիկա-ֆուրաժ, մոտ 100 տոննա քուսպ և այլն։ Այսպիսով, կոլտնտեսությունն ամեն մեկ կովի համար կուտակել է ավելի քան 5 տոննա սիլոս և կերի ճակնդեղ, 2 տոննա կոշտ և 0,5 տոննա խտացրած կերեր։ Կերերի այդ քանակը լրիվ կապահովի անասունների կուշտ ձմեռումը։ Մսուրային շրջանի սկզբից մի շարք միջոցներ են ձեռնարկվել կերերը ռացիոնալ օգտագործելու համար։ Այսպես՝ բոլոր կերերը բաշխվել են անասնապահական ֆերմաներին։ Կոլտնտե-

ության գլխավոր զոոտեխնիկի օգնությամբ անասնապահական ֆերմաներում կազմվել են կերերի ծախսման տախտակներ, կովերի և մյուս անասունների համար՝ կերաբաժիններ։

Որպես կանոն կերերը դուրս են գրվում միայն կոլտնտեսության նախագահի և հաշվապահի կողմից ստորագրված օրդերներով։

Կենսագործելով ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Սեպտեմբերյան պլենումի որոշումը, մեր կոլտնտեսությունն անցյալ տարի զգալիորեն գերակատարեց անասնապահական օբյեկտների կառուցման առաջադրանքը։ Այժմ բոլոր անասուններն ապահովված են հարմար, էլեկտրալուսավորություն ունեցող գոմերով։ Այս մսուրային շրջանում կաթնանասնապահական ֆերմայի բոլոր անասունները տեղավորված են տիպային գոմերում։ Կովանոցներում դրվել են կախովի կամուրջներ, որոնց միջոցով մեքենայացվել է կերի և գոմաղբի տեղափոխումը։ Էլեկտրիֆիկացվել են նաև կթի, կերերի նախապատրաստման և այլ աշխատատար պրոցեսները։ Դա թեթևացրել է կոլտնտեսականների ֆիզիկական աշխատանքը, բարձրացրել նրա արտադրողականությունը։ Աշխատատար պրոցեսների մեքենայացման շնորհիվ անասնապահության մեջ այժմ ավելի քիչ կոլ-



տնտեսականներ են աշխատում, քան նախորդ տարիներում։

Մսուրային շրջանի կարևորագույն խնդիրներից մեկը՝ անասունների գլխաքանակի անկորուստ պահպանումն է։ Այդ նպատակով, դեռ մսուրային շրջանին նախապատրաստվելու ժամանակից, կաթնապրանքային ֆերմայում զոոանասնաբուժական ստուգման ենթարկվեց հանրային ամբողջ հոտը։ Կոլտնտեսության զոոտեխնիկների և անասնաբույժների ուժերով անցկացվեցին մաշկային, ճիճվային և այլ հիվանդությունների դեմ կիրառվող նախազգուշական միջոցառումներ, առանձնացվեցին թույլ և հիվանդ անասունները, որոնց նկատմամբ սահմանվեց անհրաժեշտ խնամք։ Այդ բոլորի արդյունքը եղավ այն, որ հոտը պահպանվում է անկորուստ, հետզհետե բարձրանում է անասունների մթերատվությունը։

Անասունների ձմեռման հաջողությունը որոշում են կադրերը։ Ահա թե ինչու այս տարի մենք բացառիկ ուշադրություն դարձրինք անասնապահական կադրերի կոմպլեկտավորմանը։ Մեր ֆերմայում աշխատում են բավականաչափ փորձ ունեցող, գործիմաց մարդիկ, որոնք սիրելով իրենց աշխատանքը, բոլոր ուժերը ներդրել են անասնաբուծության շեշտակի վերելքի մասին պարտիայի և կա-

ռավարության կողմից մշակված վիթխարի ծրագրի անշեղ կենսագործմանը։ Անասնապահության կադրերի որակավորումը բարձրացնելու նպատակով կոլտնտեսությունում եռամյա դասընթացների միջոցով զոոտեխնիկական գիտությունն ուսումնասիրում են 40-ից ավելի կոլտնտեսականներ։ Նրանք այդ միջոցով ուսումնասիրում են առաջավորների, հատկապես Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի մասնակիցների փորձը և գիտության նվաճումները։

Առաջավորների փորձի և գիտության նվաճումների հիման վրա ֆերմայի անասնապահներն այժմ հաջողությամբ ընդունում են կովերի ծինը, մատղաշները աճեցնում են մորից անջատ և չտաքացրած գոմերում։

«Կարավաևո» հոչակավոր անասնապահական սովխոզի փորձի կիրառումը իր առաջին դրական արդյունքներն է տալիս մատղաշի անկորուստ պահպանման և աճի արագացման ասպարեզում։

Ընթացիկ տարվա սկզբին Սևանի շրջանի անասնաբուծության բնագավառի աշխատողները սոցիալիստական մրցությամբ ստանձնեցին բարձր պարտավորություններ և մրցման հրավիրեցին Ադրբեջանական ՍՍՌ Ղազախի շրջանի անասնապահ կոլտնտեսականներին։ Վերջերս մեր ֆերմայի աշխա-



տողները նոր, լրացուցիչ պարտավորություններ ստանձնեցին Ղուկասյանի շրջանի անասնաբուծության բնագավառի աշխատողների դիմումը քննարկելու ժամանակ։ Նրանք պայքար են կազմակերպել ֆուրաժային կովից պլանից ավելի 200 կգ. կաթ ստանալու, խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակի ավելացման պլանը 105 տոկոսով կատարելու, տնտեսական տարին բարձր ցուցանիշներով փակելու համար։

Դրան հասնելու համար սոցիալիստական մրցություն է ծավալվել կոլտնտեսության անասնապահական ֆերմաների միջև։ Կաթնապրանքային ֆերմայում միմյանց հետ մրցում են բոլոր բրիգադաներն ու կթվոր-անասնապահները։ Ամեն տասնօրյակի վերջում ստուգվում են մրցության արդյունքները, քննարկում են արտադրական խորհրդակցություններում, հրապարակվում են պատի թերթերում, խլյիշովկաներում և ֆերմայի նորաստեղծ կարմիր անկյանը փակցված ցուցանիշների տախտակում։ Յուրաքանչյուր կթվոր ժամանակին տեղյակ է լինում իր օրվա աշխատանքի արդյունքների ու հետագա անելիքների մասին։ Ագիտատորները սիստեմատիկաբար մասսայականացնում են մրցության արդյունքները։ Նրանցից Գ. Սարգըսյանը, Գ. Խաչատրյանը, Ս. Մկրտչյանը,

Ա. Մուրադյանը և շատերը անասնապահներին պարզաբանում են ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի Հունվարյան պլենումի որոշումը և այդ կապակցությամբ ֆերմայի առջև դրված խնդիրները։

Այդ բոլորի շնորհիվ ձմռան պայմաններում, նախորդ տարիների համեմատությամբ, զգալիորեն ավելացել է կովերի կաթնատվությունը, գերակատարվել են հունվար, փետրվար և մարտ ամիսների կաթնատվության պլանները։ Մեր կաթնապրանքային ֆերմայում է գտնվում շրջսովետի գործկոմի և պարտիայի շրջկոմի կողմից սահմանված Փոխանցիկ Կարմիր դրոշը, որը նվաճվեց դեռ դեկտեմբեր ամսվա ցուցանիշների համար։ Կթվոր անասնապահներին խրախուսելու նպատակով ֆերմայում ևս սահմանվել է կոլտնտեսության վարչության և պարտիական կազմակերպության Փոխանցիկ Կարմիր դրոշ, որն այժմ գտնվում է առաջավոր կթվորուհի Ն. Հարությունյանի ձեռքում։ Առաջավոր կթվորուհիներ Ա. Թադևոսյանը, Գ. Հունանյանը, Ռ. Ինքնաթևոսյանը և ուրիշներ, որոնք առաջին եռամսյակում իրենց խնամքին հանձնված կովերի կաթնատվության առաջադրանքը կատարել են 180—200 տոկոսով, պայքարում են Փոխանցիկ Կարմիր դրոշը նվաճելու համար։

---



# ԱՎԵԼԱՆՈՒՄ Է ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՍՊԱՌՄԱՆ ԱՊՐԱՆՔՆԵՐԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

(ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ)

Ծանր ինդուստրիայի զարգացման շնորհիվ, մեր երկրում անընդհատ ավելանում է ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը և մեծ չափերով ընդլայնվում է արտադրվող ապրանքների ասորտիմենտը։

★ Այս տարի ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը զարգացնելու, արտադրվող ապրանքների որակը բարելավելու և տեսակային ցանցը լայնացնելու նպատակով, պետական բյուջեով նախատեսված է ծախսել 27 միլիարդ 900 միլիոն ռուբլի։ Բացի այդ, թեթև, սննդի և տեղական արդյունաբերության ձեռնարկությունները այդ նույն նպատակով խոշոր չափերի հասնող վարկ կստանան պետությունից։

★ Միայն ՍՍՌՄ Լայն սպառման ապրանքների արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները 1955 թվականին կարտադրեն 6,1 միլիարդ մետր բամբակյա գործվածքեղեն, 600 միլիոն մետրով ավելի, քան անցյալ տարի։ Ընթացիկ տարում արտադրվելու է ավելի քան 227 միլիոն մետր բրդյա գործվածքեղեն։ Մետաքսե գործվածքեղենի արտադրանքը

կհասնի 515 միլիոն մետրի։ Բնական, արհեստական և շտապելնի պալատնոյի արտադրանքը 1950 թվականի համեմատությամբ կավելանա 4,5 անգամ։

★ ՍՍՌՄ Լայն սպառման ապրանքների արդյունաբերության մինիստրության կարի ֆաբրիկաները, նախորդ տարվա համեմատությամբ, այս տարի երկրին կտան 1,5 միլիարդ ռուբլով ավելի պատրաստի հագուստեղեն։ Բաց կթողնվի 2,5 միլիոն տղամարդու վերարկու, 2 միլիոն կոստյումներ, շալվար, կանացի հագուստ և մոտ 1 միլիոն տղամարդու սարոչկա։

★ 1955 թվականին, անցյալ տարվա համեմատությամբ, տրիկոտաժ-սպիտակեղենի արտադրանքն ավելանալու է 4 միլիոն հատով, վերին հագուստեղենինը՝ 2 միլիոնով, գուլպա-նասկու արտադրանքը ավելանալու է 30 միլիոն զույգով։

★ Այս տարի, 1954 թվականի համեմատությամբ, մոդելային կոշիկների արտադրությունն ավելանալու է 25 միլիոն զույգով։ ՍՍՌՄ լայն սպառման ապրանքների արդյունաբերության մինիստրության կոշկի ձեռնարկությունները 1955 թվականին արտադրելու են կանացի և երեխայի 300 նոր ձևի կոշիկներ։

★ Մեր երկրում 1955 թվականին կարտադրվի 18 միլիոն 900 հազար ժամացույց՝ տարբեր տեսակի, 12 տոկոսով ավելի, քան արտադրվել է 1954 թվականին։ Արտադրվող ժամացույցների ընդհանուր թվից 7 միլիոն 300 հազար հատը լինելու է ձեռքի, իսկ 350 հազարը՝ ոսկի։

★ 1955 թվականին արտադրվելու է 1 միլիոն 450



հազար կարի մեքենա։ Կարի մեքենաների համար բաց է թողնվելու 17 միլիոն ռուբլու պահեստի մասեր։

★ Միայն Մեքենաշինության մինիստրության ձեռնարկությունները արտադրելու են ավելի քան 800 հազար մետաղյա մահճակալներ։ Արտադրվող մահճակալների 80 տոկոսը լինելու է նիկելապատ։

★ Միայն ավտոմոբիլային, տրակտորային և գյուղատնտեսական մեքենաշինության մինիստրության ձեռնարկությունները արտադրելու են 2 միլիոն 850 հազար հեծանիվ, որից 650 հազարը՝ մանկական։ Մոտոցիկլետների արտադրությունը կհասնի մինչև 65 հազարի, կամ 30 տոկոսով ավելի, քան եղել է 1954 թվականին։

★ ՍՍՌՄ ռադիո-տեխնիկական արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները ընթացիկ տարում արտադրելու են 2 միլիոն 650 հազար ռադիոընդունիչ, 450 հազար տելևիզոր։

★ Մեծ թվով ավելանալու է տնային գործածության իրերի արտադրությունը։ Արտադրվելու է ավելի քան 290 հազար լվացքի մեքենա։ 1950 թվականի համեմատությամբ, այս տարի ավելանալու է սև չուգունե ամանեղենի արտադրությունը 5 անգամ, չուգունե էմալապատ ամանեղենինը՝ 7 անգամ, ալյումինե ամանեղենինը՝ 3 անգամ, երկաթե ցինկապատինը՝ 4 անգամ և այլն։

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 85-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

*Վ. Ի. Լենինը Կոմունիստական պարտիայի կազմակերպիչն է և առաջնորդը։*

*Վ. Ի. Լենինը աշխարհում առաջին սոցիալիստական պետության հիմնադիրն է։*

*Վ. Ի. Լենինը ռևոլյուցիոն գիտության մեծ կորիֆեյ։*

*ՍՍՌՄ-ում սոցիալիզմի կառուցման լենինյան պլանը և սովետական ժողովրդի պայքարը նրա իրագործման համար։*

*Մարքսիստական-լենինյան ուսմունքը կոմունիզմի հաղթանակի մասին։*

*Լենինյան քաղաքականությունը ծանր ինդուստրիան բոլոր միջոցներով ու առաջին հերթին զարգացնելու մասին և պարտիայի պայքարը այդ քաղաքականության կենսագործման համար։*

*Վ. Ի. Լենինը աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու մասին, որպես կոմունիզմի հաղթանակի վճռական պայման։*

*Վ. Ի. Լենինը բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի մասին, որպես Սովետական պետության ուժի հիմնական աղբյուր։*



*Սովետական Միության ժողովուրդների անխախտ բարեկամությունը լենինյան գաղափարների մարմնացումն է։*

*Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդի ղեկավար և ուղղություն տվող ուժն է կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում։*

*Պետական ապարատի աշխատանքի լենինյան սկզբունքները և նրա բարելավման խնդիրները։*

*Վ. Ի. Լենինը կոմունիզմի համար մղվող պայքարում ժողովրդի վճռական դերի մասին։*

*Լենինիզմը ամբողջ աշխարհի աշխատավորների պայքարի դրոշն է՝ հանուն խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի։*

## 2. ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՏՈՆԸ՝ ՄԱՅԻՍԻ ՄԵԿԸ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. ԼԵՆԻՆ.*— Մայիսի մեկը, *Երկեր, հատոր 7, էջ 243—248, Հայպետհրատ, 1949։*

*Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.*— «Կեցցե՛ մայիսի մեկը», *Երկեր, հատոր 2, էջ 257—263, Հայպետհրատ, 1948։*

Անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումի որոշումը, *ընդունված 1955 թվականի հունվարի 31-ին ընկ. Խրուշչևի զեկուցման առթիվ, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի փետրվարի 2-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ.— Անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին, *զեկուցում ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումում, 1955 թվականի հունվարի 25-ին, տպագրված «Ս.Հ.»-ի 1955 թվականի փետրվարի 3-ի, 4-ի և 5-ի համարներում։*

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1955 թվականի մարտի 9-ի որոշումը Գյուղատնտեսության պլանավորման պրակտիկան փոփոխելու մասին, *տպագրված «Ս.Հ.»-ի 1955 թվականի մարտի 11-ի համարում։*

ՍՍՌՄ Գերագույն Սովետի երկրորդ սեսիայի արդյունքների վերաբերյալ նյութեր, *տպագրված «Ս.Հ.»-ի 1955 թվականի փետրվարի 5-ի, 6-ի, 8-ի, 9-ի, 10-ի, 11-ի և 12-ի համարներում։*

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1954 թվականի պետական պլանի կատարման արդյունքների մասին, *ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական Վիճակագրական Վարչության հաղորդագրությունը, տպագրված «Ս.Հ.»-ի 1955 թվականի հունվարի 22-ի համարում։*

## 3. ԾԱՆՐ ԻՆԴՈՒՍՏՐԻԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԲՈԼՈՐ ՃՅՈՒՂԵՐԻ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԻՄՔԵՐԻ ՀԻՄՔՆ Է

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Համառուսաստանյան էլեկտրատեխնիկական 8-րդ համագումարի նախագահությանը, Երկեր, հատոր 33, էջ 35—36, Հայպետհրատ, 1952։*



*Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.—* Երկրի ինդուստրացման մասին *և* աջ թեքման մասին ՀամԿ(բ)Պ-ում, *Երկեր, հատոր 11, էջ 281—293, Հայպետհրատ, 1949։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ.—* Անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին, *զեկուցում ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումում 1955 թվականի հունվարի 25-ին, տպագրված է «Ս. Հ.»-ի փետրվարի 3-ի, 4-ի և 5-ի համարներում ։*

*Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ.—* Ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովետի երկրորդ սեսիայում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի փետրվարի 10-ի համարում։*

Հանուն գյուղատնտեսության շեշտակի վերելքի, *«Պրավդա»-ի 1955 թվականի մարտի 11-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի մարտի 12-ի համարում։*

*Օ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ.—* Մանր ինդուստրիայի զարգացման լենինյան-ստալինյան քաղաքականության հաղթանակը, *տպագրված է «Ս. Հ.»-ի 1955 թվականի մարտի 5-ի համարում։*

## 4. ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ ԵՎ ՍՈՎԽՈԶՆԵՐՈՒՄ ԼԱՅՆՈՐԵՆ ԱՐՄԱՏԱՎՈՐԵՆՔ ԵԳԻՊՏԱՑՈՐԵՆԸ, ՍՏԵՂԾԵՆՔ ԿԵՐԻ ԿԱՅՈՒՆ ԲԱԶԱ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումի որոշումը, *ընդունված 1955 թվականի հուն-*

վարի 31-ին, ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի փետրվարի 2-ի համարում:

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ.— Անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին, զեկուցում ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումում 1955 թվականի հունվարի 25-ին, տպագրված «Ս. Հ.»-ի փետրվարի 3-ի, 4-ի և 5-ի համարներում:

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1955 թվականի մարտի 9-ի որոշումը գյուղատնտեսության պլանավորման պրակտիկան փոփոխելու մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի մարտի 11-ի համարում:

Հանուն գյուղատնտեսության շեշտակի վերելքի, «Պրավդա»-ի 1955 թվականի մարտի 11-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի մարտի 12-ի համարում:

Ամրապնդել անասնաբուծության կերի բազան. «Ս. Հ.»-ի առաջնորդողը, տպագրված 1955 թվականի փետրվարի 22-ի համարում:

---

## СОДЕРЖАНИЕ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել հետևյալ գրքերը.

*ՄԱՕ ՑԶԵ-ԴՈՒՆ.*— Ընտիր երկեր, հինգ հատորով, *հատոր 4-րդ։ Գինը 16 ռ. 70 կ., 624 էջ, տիրաժ 5.000։*

*Ա. Ա. ԿԱՆԱԵՎ.*— «Ջրաղացից մինչև ատոմային շարժիչը»։ *Գինը 3 ռ. 30 կ., 216 էջ, տիրաժ 4.000։*

*Ա. Ա. ՎՎԵԴԵՆՍԿԻ.*— «Էլեկտրականությունը մեր կյանքում»։ *Գինը 1 ռ. 10 կ., 82 էջ, տիրաժ 4.000։*

*ՄԱՐԻԱՄ ԲԵԼԻՑԿԻ.*— «Բացիլ 078»։ *Գինը 4 ռ. 65 կ., 272 էջ, տիրաժ 10.000։*

*Հ. ԼԵԲԵՐԵԽՏ.*— «Լույսը Կոորդիում»։ *Գինը 5 ռ. 05 կ., 264 էջ, տիրաժ 3.000։*

*ԱԼԵՔՍԱՆԴՐ ԱՐԱՔՍՄԱՆՅԱՆ.*— «Ազատության աքսորականը»։ *Գինը 7 ռ., 380 էջ, տիրաժ 5.000։*

---

Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

**Отдел Пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 7 1955 г.**

*ՎՖ 09375 Պատվեր 310 Տիրաժ 8250*

*ՀՍՍՌ Կուլտ. մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8, 1955 թ., գինը 50 կոպ.։*